ՃԱՄԲՈՒ ՆՈԹԵՐ

# ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆԷՆ ԱՆԴԻՆ...

ՍԻՄՈՆ ՍԱՄՍՈՆԵԱՆ

Առաջին Կիրակին եկեղեցի գացի։

Հայկական եկեղեցին փոքր ու պարզ ըլլալով հանդերձ՝ Լոնտոնի միւս հսկայ եկեղեցիներէն աւելի խորհրդաւոր ու տպաւորիչ գտայ։

Եկեղեցին միակ վայրն է, ուր հայերը իրարու հանդիպելու առիթը կ'ունենան, և ուր միա՛յն հայերէն կը խօսին։

Կիպրոսէն, Պարսկաստանէն, Պոլիսէն և Եգիպտոսէն գաղթած հայերը այդ օտար երկինքին տակ, եկեղեցիին շուրջ, հայկական մթնոլորտ մը ստեղծած են։

Առաջնորդարանին մէջ ծանօթացայ Սուրիոյ Կիլիկեան վարժարանի տնօրէն՝ Պր. Յովհաննէս Պետեանի։

Պատմական վայրերով մեծապէս հետաքրքրուող մէկն էր ան. այդ պատճառաւ՝ միասին շատ տեղեր այցելեցինք։

Մեծ հիացումով դիտեցինք Ս. Պօղոս Տաճարին կոթական ոճը։ Անոր բարձր, հուժկու և մեծածախս սիւները՝ գաղթավայրերու վրայ տիրապետութիւն տարածելու ուժականութեան մը տպաւորութիւնը ձգեցին վրաս։

Այս տաճարին մէջ խնողուած արձանները՝ միայն պատմական նշանակութիւն ունէին, արուեստի ու գեղեցկագիտական արժէք չէին ներկայացներ։

Բարեկամս մեծ հետաքրքրութեամբ հետեւեցաւ լորտերու, իշխաններու և քաղաքական դէմքեր ներկայացնող ու անոնց կեանքը պատմող արձաններու շարքին։

Անոնց մէջ՝ արուեստի հետաքրքրութիւն գոհացնող գործի չհանդիպեցայ։ Այդ պաղ արձաններու տողանցքին քիչ մը տաքութիւն կուտար իւղաներկ նկար մը՝ «Քրիստոս՝ լուսաւոր լապտերը ձեռքին»։ Առաջին ակնարկով արուեստի լաւ ստեղծագործութեան մը տպաւորութիւնը կը թողուր։ Քիչ մը երկար դիտելէ ետք՝ ստուգեցի որ միւս ճերմակ անարիւն մարմիններուն մէջտեղը գտնուիլն էր որ այդ պատրանքը տուած էր ինծի։

Այդ գունաւոր նկարը մեծ տպաւորութիւն ձգած ըլլալու էր բարեկամիս վրայ, որ ինծի դառնալով ըսաւ.

— Ես շատ լաւ գտայ այս նկարը. քու կարծիքդ ի՞նչ է։

— Ոչ մէկ արժէք կը ներկայացնէ, ըսի. եթէ այս նկարը զետեղուի որեւէ թանգարանի նկարչական բաժնին մէջ, կը մարի՝ հակառակ իր լապտերի լոյսին։ Հոս, ան առանձին է, սառած արձաններու մէջտեղ, որոնց քիչ մը տաքութիւն կուտայ իր աղօտ լոյսով...։

Այսպէս, յաջորդաբար այցելեցինք Լոնտոնի պատմական վայրերը։

Պատմական Բերդը, ասպետներու գործածած զրահներու ցուցադրութեամբ, նշանաւոր էր։ Հոն կային բնական չափով երկու զրահապատ ձիեր, որոնցմէ մէկուն վրայ զինեալ ասպետ մը նստած էր։

Բերդը ունէր մէկէ աւելի բաժիններ։ Բանտ մը, ուր բանտարկուած էին կարտինալներ՝ քաղաքական յանցանք գործած ըլլալու ամբաստանութեամբ. հոն բանտարկուած թագուհիներէն ոմանք՝ մահուան ալ դատապարտըւած էին։

Դրան մը վրայ գրուած էր՝ «արեան սրահ». ուրիշ սենեակի մը մէջ զետեղուած էին մահուան պատիժի ատեն գործածուած կացինը եւ «սալը»։

Նեղ անցքէ մը անցնելէ ետք, այս տխուր տեսարանները յանկարծ փոխուեցան։ Մուտք գործեցինք Անգլիոյ ոսկեղէններու գանձատունէն ներս։ Ի՜նչ հարստութիւն, փորձութեան ենթարկող ու կախարդիչ իրեր, թագեր, եպիսկոպոսական գաւազաններ, զանազան չափով խաչեր, մանեակներ եւ բաժակներ. այս բոլորը ոսկեղէն էին եւ թանկագին քարերով զարդարուն։ Անոնց մօտենալը արգիլուած էր, երկաթէ ցանկապատ մը՝ դիտողը կը բաժնէր այդ հարստութիւնները պարփակող ապակեայ ցուցափեղկերէն։

Ուր որ գացի զբօսաշրջիկներու մեծ խումբերու հանդիպեցայ։ Այս զբօսաշրջիկներուն մէջ աչքի կը զարնէին տարիքոտ ամերիկացիները։ Նոյնն է պարագան նաեւ Եգիպտոս այցելողներուն։ (8)

## ՄԵՐ ՕՐԱՑՈՅՑՆԵՐԸ

Հայկական Ընթերցասրահի «Երեւան» օրացոյցը աւանդական դարձած է այլեւս. անիկա բոլորած է իր 23րդ տարին։ Անոր չափը, տեսքը, կազմը իւրայատուկ և ինքնատիպ են։ Իսկ բովանդակութիւնը՝ զուտ հայրենական։

Ամսական թուականներու տախտակին վրայ (յստակ ու խոշոր, տեսանելի թուանշաններով) գունաւոր տպագրութեամբ նկար մը։ Քովնտի՝ տօնացոյց և յիշատակի արձանագրութիւններ։ Այս տարուան «Երեւան» օրացոյցը բոլորովին նոր ու յաջող, մեծադիր նկարներով է զարդարուած։

* * *

Ըսելիք չկայ Ալպէռ Շմաւոնեանի պատրաստած օրացոյցին։ Խղճամիտ և անհաշիւ աշխատանք։ պէտի ըսէինք քրտինք խլած է այս գործը՝ զայն պատրաստողէն։

Կարելի չէ քանի մը տողի մէջ ամփոփել Շմաւոնեանի օրացոյցին ճոխ բովանդակութիւնը։ Արդի Հայաստանի քարտէսը և չուրջը Ապրիլեան Եղեռնի զոհ մեծ մտաւորականները։ Ապա՝ Զօր. Անդրանիկի սուրին պատկերովը բացուող ամսօրեայ թերթիկներ, որոնց քովը, կռնակը տրուած են առատ նիւթեր, գրական, ազգային, գիտական և օգտապաշտական։

Մեծ Եղեռնին նահատակուած մտաւորականներուն լիակատար ցանկը, դահճապետ Թուրք սատրապամին տուած ջարդի հրամանը, և այլ գիտելիքներէն ետք, Գահիրէի հայ հաստատութեանց, բըժիշկներուն և անհատ ազգայիններու հեռաձայներուն թիւերը։

Խիստ գովելի է Ալպէռ Շմաւոնեանի կատարած աշխատանքը և արժանի է որ զինքը կոչենք Թէոդիկի աշակերտը։ Կ. Ե.




## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| ԵՐԿԻՐՆԵՐ | | ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԶ | ՕԴԱՅԻՆ ԹՂԹԱՏԱՐ |
|---|---|---|---|
| ԵԳԻՊՏՈՍ | Ե. Դ. | 125 | — |
| ԼԻԲԱՆԱՆ | Լ. Ո. | — | 12 |
| ՍՈՒՏԱՆ | Ս. Դ. | 125 | 175 |
| ԱՐԱԲ. ԵՐԿԻՐՆԵՐ | ՍԹԵՐԼ. | 1.10.0 | 2.0.0 |
| | | ՏՈԼԱՐ ԿԱՄ ՓՈԽԱՐԺԷՔ | |
| ԵՒՐՈՊԱ ԵՒ ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔ ԱՄԵՐԻԿԱՆԵՐ, ԱՒՍՏՐԱԼԻԱ | | 5.00 | 10.00 |




## "ՅԱՂԹԱՆԱԿ" ԶԲՕՍԱՅԳԻԻՆ ՄԷՋ



Ամառ է։ Տաք։ Ի՜նչ լաւ են, գրաւիչ զովասուն զբօսայգիները Երեւան քաղաքամայրի. անոնք պէսպէս կանաչներու և ծաղիկներու բոյրով փռուած են ոստանին տարբեր մասերուն մէջ։ Անոնք լեցուն են մարդոցմով, որոնք կը զբօսնուն, կը հանգստանան ըստ ւերախիտ ծառերուն տակ, կը կարդան գիրքեր, լրագիրներ, կը զրուցեն, կամ պարզապէս կը հետեւին անհոգ երախաներու զուարճալի խաղերուն։

Երեւանի նշանաւոր հանգըստավայրերէն է «Յաղթանակ» ըզբօսայգի-հանրային պարտէզը, որ տարածուած է քաղաքի հիւսիսային բարձրաւանդակին վրայ։ Գեղեցիկ է մշակոյթի եւ հանգիստի այդ զբօսայգին, մանաւանդ ամառը։

Այդ տաք օրերուն շատ մարդիկ կը հանգստանան այնտեղ։ Այգին հանգիստի համար ունի բոլոր յարմարութիւնները, բազմապիսի խաղեր, կարուսելներ (ելեկտրական պտուտակաւքեր) երախաներուն համար։ Սակայն ամենէն գրաւիչը այդ նորաստեղծ լիճն է, որ դուք կը տեսնէք վերի նկարին մէջ։ Ամէն օր, այնտեղ կը լողնան հազարաւոր աշխատաւորներ, երախաներ, կը զբօսնուն անոր կանաչապատ ափերուն։ Այդ զբօսայգիի կանաչներուն մէջ կը գտնուի «Արագիլ» սրճարանը, ուրկէ կը բացուի Երեւանի հիասքանչ համայնապատկերը։





(Լուսանկարներ Պ. Պետրոսեանի, Հ. Հէքէքեանի եւ Վ. Սեւոյեանի)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة "ج.ع.م" - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز : السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) • Tél.915013
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef ; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱՅԵԱՆ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 61 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՅՈՒՆՈՒԱՐ 1965 | ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. | عدد رقم ٦١ — الخميس ١٤ يناير ١٩٦٥


## ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ ԱՄԵՆ. ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ



### Ն.Ս.Օ.Տ.Տ. ՎԱԶԳԷՆ Ա.
### ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

Որ այս առաւօտ ժամը 1.45ին, ընկերակցութեամբ Կոմիտաս Եպիսկոպոսի, Գաւազանակիր Բեբերեան Վարդապետի և «Էջմիածին» ամսագրի խմբագիր Ա. Հատիտեանի, Մոսկուա–Փրակա–Վիեննա–Պելկրատ–Պոլիս–Դամասկոս օդային ճամբով Գահիրէ ժամանեց։ Պաշտօնական մարմիններու ներկայացուցիչներ եւ ժողովուրդէն հոծ թիւով երկսեռ հայրենակիցներ եկած էին դիմաւորելու։ Վեհափառը ուղղուեցաւ օդակայանի յատուկ հիւրասրահը։ Աղեքսանդրիոյ Առաջ. փոխ. Զաւէն Ծ. Վրդ. Չինչինեան արտասանեց բարի գալուստի խօսքը։ Վեհ. Հայրապետը պատասխանեց ու տուաւ իր օրհնութիւնը ժողովուրդին եւ մաղթանքներ՝ արաբ ազգին եւ ԱՄՀի Նախագահ Նասէրին։ Ապա, ազգայինի մը շքեղ ինքնաշարժով, Վեհափառը եւ իր ընկերակիցները առաջնորդուեցան Սեմիրամիս պանդոկը, բուռն ծափահարութիւններուն մէջ ժողովուրդէն հոծ զանգուածի մը, որ օդանաւակայանի մեծ բակին մէջ միացած էր պաշտօնական մարմիններու եւ անձնաւորութեանց։

Առտուն Ս. Պատարագ կը մատուցուի Յովհաննու Կարապետի տօնին առթիւ, որուն աւարտումին՝ Վեհափառը իր օրհնութիւնն ու պատգամը կուտայ հաւատացեալ ժողովուրդին։ Իսկ կէսօրէ ետք ժամը 7ին, Հելիոպոլսոյ Նուպարեան վրժ.ի Պլըգտանեան սրահի մէջ հանդիպում կ'ունենայ հասարակութեան հետ։

Հայրապետը եւ իր շքախումբը վաղը կը մեկնին Ատիս Ապեպա, ուր կը մասնակցին Ուղղափառ Եկեղեցիներու Համաժողովին, որ կը բացուի այսօր։

Ամենայն Հայոց Կաթողիկոս Վեհափառ Վազգէն Ա.ի ժամանման և այսօր կ. ե. ժամը 7ին՝ Նուպարեան վրժ.ի մէջ ժողովուրդին հետ հանդիպման պատճառով, Հայկական Ընթերցասրահի այսօրուան դասախօսութիւնը տեղի պիտի չունենայ։

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Արաբական Լիկայի կեդրոնին մէջ՝ Յունուար 9ին բացուեցաւ արաբ պետութեանց վարչապետներու ժողովը։ Եկած էին՝ Իրաքի վարչապետ Թահէր Եհիա, Յորդանանի վարչապետ Վահփաթ էլ Թալհունի, նաեւ Լիբանանի, Քուէյթի, Թունուզի, Լիպիոյ և Մարոքի վարչապետները, Պաղեստինի Ազատագրման Կազմակերպութեան Գործադիր Խորհուրդի Նախագահ Ահմէտ Շուքէյրի եւս մասնակցեցաւ։ Ներկայ էր զօրավար էլ Մէտէնի։

Ժողովը ուսումնասիրեց Զինուորական ծրագիրը, ԱՄՀի, Իրաքի, Յորդանանի և Սուրիոյ բաղանձնած և կատարած պարտաւորութեանց առնչութեամբ։ Տախ էլ Ուղանիի և Քուպայի կայաններուն կառուցումը և յիրանանեան տնտակէտը։ Ալի Ալի Ամէր հրամանատարին զինւ. զեկոյցը լսուեցաւ գանփակ նիստի մէջ։

Ուսումնասիրուեցաւ նաեւ Թեքնիք գրասենեակի, միջարաբական Ֆոնտի, արաբաափրիկեան դրամատան բաժնեթուղթերու վաճառման, Արաբ Հասարակաց Շուկային, քարիւղի վաճառման, Սուտանի, Մարոքի, Ալճերիոյ, Թունուզի, Լիպիոյ և Եմէնի Արաբական Տնտեսական միութեան անդամակցութեան, Իսրայէլի և զինուորական ծրագիրներու վերաբերեալ հարցերը։

Ժողովը իր բ. նիստն ունեցաւ Կիրակի, 10 Յունուարին։ Ու Ժողով իր աշխատանքը աւարտեց Երեքշաբթի 12 Յունուարին, առնելով 24 գաղտնի որոշումներ։

* *

Սուտանի վարչապետ Սէր էլ Խեթմ Խալիֆայի գլխաւորութեամբ ԱՄՀ եկած սուտանական պատուիրակութիւնը տեսակցութիւններ և նիստեր ունեցաւ Նախագահ Նասէրի և ԱՄՀի վարիչներուն հետ։

Ուսումնասիրուեցան՝ երկու պետութեանց առեւտրական փոխյարաբերութեանց խնդիրները, տնտեսական կարելիութիւններ, ճարտարարուեստական օժանդակութիւն։

* * *

Շաբաթ, 9 Յունուարի Ազգ. Ժողովի նիստը տեղեկացաւ, Նախագահ Նասէրի գրած մէկ նամակէն, որ Նախագահին պաշտօնը կը վերջանայ 26 Մարտ 1965ին, և թէ պէտք է նորին ընտրութեան ձեռնարկել այժմէն պատրաստուելով, ըստ Սահմանադրութեան 102րդ և 103րդ յօդուածներուն։ Այս հարցին ու այլ խնդիրներու մասին որոշուեցաւ վիճաբանիլ Ռամատանի ամիսը լրանալէն ետք՝ ա. նիստին։

Մինչ այդ, վերջին հինգ օրերու ընթացքին, զանազան ընկերային կազմակերպութիւններ ձեռնարկեցին աշխատանքի՝ մինչեւ 20 Յունուար որոշելու համար նախագահական թեկնածուն։

* * *

Արաբ Ընկերվ. Գործադիր Խորհուրդը նիստ գումարեց Նախագահ Նասէրին մօտ Կիրակի 10 Յունուարին։ Քննուեցան պետութեան ընդ. քաղաքականութիւնը և Ա. Ը. Միութեան վերաբերեալ հարցեր։ Կայացաւ խորհրդակցութիւն՝ ճարտարարուեստական արտադրութեան, արտածման, պիւտճէի, պարենաւորման, փոխադրութեան և հաղորդակցութեան խնդիրներուն շուրջ։

Երկրորդ նիստ մը գումարուեցաւ Չորեքշաբթի, 13 Յունուար և ուսումնասիրուեցան կրթութեան և ուսուցման հարցերը։



«Չահակիր» ջերմօրէն կը շնորհաւորէ ԱՄՀ–ի կորովի Նախագահ ԿԱՄԱԼ ԱՊՏԷԼ ՆԱՍԷՐԸ՝ իր ծննդեան տարեդարձին առթիւ՝ մաղթելով արեւշատութիւն և յաջողութիւններ։

## ՄԵԾԻ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՇՆՈՐՀԱԶԱՐԴ ԽՈՐԷՆ Ա.Ի ԺԱՄԱՆՈՒՄՆ ՈՒ ՄԵԿՆՈՒՄԸ

Երկուշաբթի, 12 Յունուար 1965 կ. ե. ժամը 4,50ին, Գահիրէի օդանաւակայանը իջած է Անթիլիասի Շնորհ. Կաթողիկոս Խորէն Ա. Բարոյեան։ Ան ուղղուած է Գահիրէի Ազգ. Առաջնորդարանը, ուր ընդունուած է Ազգ. Իշխանութեան ներկայացուցիչներուն կողմէ եւ հրաշափառով մուտք գործած է Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին։

Շնորհ. Խորէն Ա. տէրը այցելեր է Գահիրէի դաշնակցական ակումբը, ուր իրեն ի պատիւ ճաշկերոյթ մը տրուեր է։ Ան մեկնեցաւ Ատիս Ապեպա՝ Չորեքշաբթի առաւօտ, մասնակցելու համար Եկեղեցիներու Համաժողովին։

## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՈՒՂՂԱՓԱՌ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒ ՊԵՏԵՐՈՒՆ ԺՈՂՈՎԸ

Այս ժողովը տեղի պիտի ունենար Յունուար 7ին՝ Ատիս Ապեպայի մէջ բայց յետաձգուեցաւ այսօրուան (Յունուար 14)։ Պիտի մասնակցին ղպտի, ասորի, մալապար, հայ և հապէշ ուղղափառ եկեղեցիներու պետերն ու ներկայացուցիչները։ Հրաւէր ղրկուած է նաեւ Պոլսոյ Տիեզերական Պատրիարքին, ռուս, սերպ, պուլկար և ռումէն եկեղեցիներուն։

Ժողովի օրակարգն է՝ քննութիւն հասարակաց հարցերու և լուծում, եկեղեցիներու միջեւ փոխյարաբերութեանց պահպանում ընտրութիւն յատուկ Կոմիտէի՝ առ այս. խաղաղութեան տեւականացման և արդարութեան վերահաստատման աշխատանք, միացման ջանքեր՝ բոլոր եկեղեցիներու միջեւ։

# ԱՆԱՀԻՏ

ԿՆՈՋԱԿԱՆ ԷՋ

ԹԻՒ 1

ՀՐԱՉԵԱՅ ՔՈՉԱՐ

## ԶՕՆ

*Անահիտ, հայ կինն ես դու, որ ծնուեցիր շատ հազարամեակներ մեզնից առաջ, ապրում ես մեր օրերում և դեռ պիտի ապրես, քանի արեւը ջերմացնում է երկիր մոլորակը և քանի դեռ մարդկութեան գոյութիւնը պիտի յարատեւի ու անհատները պիտի ճանաչուեն իրենց ազգութիւնների անուններով։*

*Հայ կինն ես դու, որին աստուածացրել է ժողովուրդը, բայց դու այլ ուրիշ աստուածների նման չես սաւառնել երկնքում, սպիտակ ամպերի վրայ նստած,դու ապրել ես քեզ ծնող ժողովրդի հետ, նրա մէջ ես եղել, յուսադրել ես նրան, երբ ծանր մաքառումներով ձգտել է պահպանել իր ինքնութիւնը, մխիթարել ու ոգեշնչել ես, երբ արիւնաքամ ընկել է խոցուած թշնամու սրից, եղել ես նրա համար աղբիւր վսեմ ներշնչումների, երբ խաղաղ պահերին ստեղծագործելու տենչով է նա համակուել։*

*Դու խոնարհ հայ աղջիկ ես եղել, Անահիտ, և քո հայեացքը ջերմացրել է հոգիներ և քո ժպիտը գեղեցիկ է եղել, ինչպէս քո հայրենիքի լեռների վրայ կամարուած երփներանգ ծիածանները։ Դու հարս ես եղել՝ հոգով բարի, ձեռքով տնարար, խղճով մաքուր և պտղաբեր ես եղել, ինչպէս քո հայրենիքի դալար հովիտները։*

*Դու մայր ես եղել գորովագութ, սիրառատ, յաճախ երջանիկ և շատ յաճախ՝ դժբախտ, և պահել, պահպանել ես սերունդներ, մայր արծուի պէս հզօր թեւերիդ տակ առնելով նրանց, կուրծքներ արձակելով, սլացել ես ոսոխի վրայ,երբ նա եկել է բոյնդ այրելու։ Այրուելով մոխացրել ես դու ու մոխիրների միջից յարութիւն ես առել կրկին ու վերստին, մահուան աշխարհից վերադարձել ես կեանք քանի հազարերորդ անգամ։*

*Ապրել ես, ապրում ես՝ աչքերիդ մէջ ծիծաղ ու ցնծութիւն՝ երբ տեսել ես զաւակներիդ խիզախումներն անողորմ թշնամու դէմ, երբ տեսել ես շնորհաշատ որդիներիդ սքանչելագործութիւնները։ Ապրել ես՝ աչքերիդ մէջ արցունք և հոգուդ մէջ աննկարագրելի վիշտ, երբ թեւերդ կապոտած,աչքերիդ առաջ սրախողխող են արել ուստրերիդ ու դուստրերիդ, սպաննել են եղբայրներիդ ու առեւանգել քոյրերիդ, կամ նետել են նրանց քո հայրենիքի լեռնային գետերի մոլեգնած ալիքների մէջ, կամ թաղել են նրանց անապատի շիկացած աւազների տակ։*

*Աշխարհում ոչ մի մայր այնքան սարսափներ չի տեսել, և այնքան ողբերգութիւններ չի ապրել, ինչպէս դու, Անահիտ, հայ մայր։ Բայց տոկացել ես դու, ապրել, քո հոգու առասպելական ուժով, փարել ես կեանքին, նոր բոյն ես հիւսել, ջերմացրել բոյնդ քո թեւերով և դայլայլել ես քո հմայիչ երգը։*

*Եւ դու ապրել ես ու պիտի ապրես։*

( Շար. տես էջ 5 )

## ԱՆԱՀԻՏ

Կանգնիր Անահիտ, ոսկեմայր բարի
Ու գեղաշնորհ.
Ծաղիր լոյսը քո մեր ոսկեդարի
Աշխարհում այս նոր:
Քեզ ստեղծեցին մարդիկ հասարակ
Որոնք աստուածներ ունէին անթիւ
Իրենց արեան մէջ եւ իրենց
տրտում.
Եւ Դիք նախանձոտ եղան նրանց
դէմ՝
Տառապիր արին ու յաւերժ տրտում,
Հաւատի համար այնքան անխորտակ
Եւ երազների այնքան լուսեղէն:
Կանգնիր Անահիտ,
Նայիր քո որդոց ցրուած կայծերին,
Եւ ցոլանքներին մարմրող արդէն.
Տես որքան նրանք անջատ են,
հեռու,
Հողմերով ծեծուած անյայտ
ափերում,
Եւ փշուր-փշուր համր ու յուսաբեկ,
Կանգնիր Ոսկեմայր,
Բեկորներ տուած քո ժողովրդի
Բիւրեղները դու հաւաքիր մէկ-մէկ,
Որ հազար-հազար փշուր էլ եղած,
Պահպանել է դեռ
Քո պատկերը հեզ՝
Գեղեցկութիւնը քո մայրազորով
Եւ բարի ոգին՝
Դու մայր, դու մեր քոյր,
Մեր դուստր անգին՝
Մեր համահզօր ու համահաւաք
Տես մնացել է արեւ մի փշուր
Յաւերժող մի ուժ Հայկեան քո
հողից՝
Մասիսի կողքին,
Եւ փոքրիկ անչափ եւ մեծահզօր,
Իր հանճարածին ակունքներով խոր.
Կանգնիր Անահիտ,
Նոր պաշտամունքով դու
վերածնուած,
Նոր սիրով սնուած,
Ոսկեմայր բարի ու գեղաշնորհ,
Ճանաչիր բոլոր քո զաւակներին՝
Եւ խորախորհուրդ աստղերին
հասած,
Եւ խոր մոլորուած եւ իրարամերժ.
Հաւաքիր նրանց մայրական ուժով՝
Քո սիրով անթեք եւ ամենազոր
Ծաղիր լոյսը քո մեծ ոսկեդարի
Աշխարհում այս նոր
Եւ եղիր յաւերժ:

ՄԱՐՕ ՄԱՐԳԱՐԵԱՆ

Մեր յարգելի Զարեան Նուարդ,
Տիկին Սեզա մեր յուզառատ,
Ո՞վ դու, ակունք երգի, լոյսի
Դաշնակահար օրիորդ Լիւսի
Եւ դու, բարի
Մեր քոյր Մարի,
Քոյրե՛ր, մայրե՛ր
Մեր սիրելի:
Մենք բոլորս էլ կը նախընտրենք
Առանց սեռից ծաղիկ ու ձեռք,
Բայց աւելի թանկ է անշուշտ
Այն ծաղիկը հայրենաշունչ,
Որ հարազատ դաշտից քաղել
Ու խնդութեամբ ձեռք են պարզել,
Աւետելով ողջ Սփիւռքին,
Թէ աշխարհ է եկել կրկին,
Հայոց հողի մայրն ու սիրտը՝
Անահիտը,
«Անահիտը»...



ԳՈՒՐԳԷՆ ՄԱՀԱՐԻ

## ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆ

*— Այո՛, ութը տարի... ինչքա՞ն բան է փոխուել... ամուսնացե՞լ ես։*

*— Չեմ յիշում։*

*— Իսկ ես ամուսնացել եմ։ Կինս հայ չէ...*

*— Ի՞նչ նշանակութիւն ունի, կարեւորն այն է...*

*— Որ ընտանեկան երջանկութիւն լինի, այնպէս չէ՞...*

*— Այո։*

*— Չեմ կարող չհպարտանալ, ես երջանիկ եմ։ Բայց...*

*— Էլ ի՞նչ «բայց»։*

*— Բայց ես չեմ թողնի, որ իմ տղան հետեւի իմ օրինակին։*

*— Ինչո՞ւ, չե՞ս ուզում, որ նա էլ քեզ նման երջանիկ լինի։*

*— Կան մանրուքներ, սիրելիս, մանր ու խոշոր մանրուքներ...*

*— Որոնք խանգարո՞ւմ են քո երջանկութիւնը։*

*— Ոչ, երջանկութիւնը մնում է երջանկութիւն։*

*— Ուրե՞մն...*

*— Ինչպէ՞ս բացատրեմ... վերցնենք վերջին դէպքը...Միայն այս մասին նրան ոչ մի խօսք։ Նա տանելով չի տանում ոչ մի ակնարկութիւն։*

*— Հասկանալի է։*

*— Ինչպէս տեսնում ես՝ ես ապրում եմ պետական հինգ յարկանի շէնքում։ Այս հանգամանքն ունի իր յարմարութիւններն ու անյարմարութիւնները։ Ահա, ինչ հիանալի յարմարութիւն, բոլոր ընդարձակ պատշգամները բացւում են բակի վրայ։ Այստեղ կարելի է հանգստանալ, օդ շնչել, լուացքը չորացնել, խորոված պատրաստել...*

*— Ճիշտ է։*

*— Ես ապրում եմ չորրորդ յարկում, իսկ իմ տակը, այսինքն երրորդ յարկում ապրում է ակադեմիայի անդամ-թղթակից Երուանդ Շահինեանը, սքանչելի մի*

(Շար. տես էջ 4)



Միայն Աստղիկ Քամալեանը չէ, որ այսպէս նազանքով է կատարում «Անահիտ» պարը:
Լուսանկար՝ Վրոյր Ամալեանի

ԳԷՈՐԳ ԷՄԻՆ

## ՈՂՋՈ՛ՅՆ ԱՍՏՈՒԱԾՈՒՀՈՒ ՊԱՏԳԱՄԱԲԵՐԹԻՆ

*Ահա և վիշապաքաղ Վահագնի քոյրը, ոսկեծին ու ոսկեմայր Անահիտը։*

*Դիմաւորենք նրան կանաչ ոստերով ու բազմերանգ ծաղիկներով, քանզի նա էլ, իր եղբօր նման, գալիս է մտաւորելու հայրենիքի և սփիւռքի իրարից բաժան քոյրերի ու եղբայրների սրտերը, պարգեւելու նրանց սէր ու միաբանութիւն, բարի գործերի յղացում և հոգեւոր պտուղների առատութիւն ու չռայլութիւն։ Շատ են փոխուել Վահագնի ժառանգները, երբեմն անճանաչելիութեան չափ։*

*Նրանց խարտեաշ վարսերը, բոց մօրուքն ու արեգակ աչքերը այրուել ու սեւացել են հայոց հողում դարեր մոլեգնող հրդեհների ծխից ու մրից,մոխիրից ու սեւ ամպերից և «Հայոց երկնի ու երկրի ծնունդ», նրանք երբեմն կարօտում են Հայաստան երկրին ու նրա մասին խօսում... անգլերէն ու ֆրանսերէն, արաբերէն ու իսպաներէն, յունարէն ու... տաճկերէն։*

*Սակայն, որտեղ որ լինեն, մազերի ու աչքերի ինչ գոյն էլ ունենան և ինչ լեզուով էլ ակամայ խօսեն Վահագնի այսօրուայ ժառանգները՝ հայ պատանիներն ու երիտասարդները, մէկ է, նրանց մէջ ոչ միայն չհանգել, այլեւ մոխիրի տակ անթեղուած կայծի նման վերստին բոցավառւում է հայրենական ոգու անմահ ու անմար հուրը...*

*Այդ նորն աւելի ու աւելի թեժացնելու և բորբոքելու համար է, որ այսուհետ Սփիւռքի հայ կանանց, պատանիների ու աղջիկների հետ խօսելու է նաև «Անահիտ»ը և այն էլ ոսկեմայր Անահիտի պէս ոչ միայն տարին երեք անգամ՝ Ապրիլին, Յուլիսին ու Օգոստոսին՝ ծաղիկների տօնով, Վարդավառի մրգահասով ու բերքի օրհնութեամբ, այլ ամէն ամիս, տարին բոլոր...*

*Ձեզ է դիմելու նա մանաւորապէս և Ձեզ հետ է զրուցելու Սփիւռքի հայ մայրեր ու քոյրեր, որովհետեւ ինչքան էլ զօրեղ լինի Վահագնի խելքն ու բազուկը,ոչինչ չի կարող փոխարինել սիրոյն ու մայրական կաթին, որոնց մի ճառագայթն ու մի կաթիլը կարող են հայ պահել հայածին մանկանը ազգերի ամէն մի խճողուած խառնարանում։*

*Չէ՞ որ մայրական կաթի հետ է մանկան մէջ ներծծւում լեզուն ու ոգին, բողբոջում՝ հայաբառ ու հայահնչուն օրօրոցի երգի դայլալով ու զօրանում տատի պատմած հայեցի հէքեաթով ու մօր խրատախօսքով, քրոջ քնքուշութեամբ ու եղբօր սաստով, իսկ ապա նաև՝ հօր պատգամով ու ուսուցչի յորդորով, դասագրքի դասով ու հայրենի գրքերի ու աւանդութիւնների անմահ շնչով։ Չէ՞ որ ձեր մայրերն ու աւագ քոյրերն էին որ երէկ,կարմիր ջարդի օրերին, Տէր-Զորի անապատում,աւազների վրայ մատներով մեսրոպեան տառեր էին գրում և սովորեցնում իրենց քաղցած ու բոկոտն մանուկներին, որպէսզի նրանք հայ մնան, թէկուզ իրենց ծնողների մահուան գնով... Չէ՞ որ դուք և ձեր աւագ ու կրտսեր*

(Շար. տես էջ 5)

# ՄԱՐԶԱԿԱՆ

## ԱՀԼԻ-ԶԱՄԱԼԷՔԻ ՇԱԲԱԹ

### ՊԱՍՔԷԹՊՈԼ

Անցեալ շաբթու մէջ երկու շատ կարեւոր մրցումներ տեղի ունեցան Պասքէթպոլի եւ Ֆութպոլի։

Պասքէթպոլի մրցումը, որ վերջացաւ Ահլիի յաղթականով՝ ի ներկայութեան մօտ 3000 հոգիի, ինչպէս նաեւ Գահիրէի կառավարիչ Սալահ Տըսուքիի, որ միեւնոյն ժամանակ Ահլիի Նորընտիր Նախագահն է։

Մրցումը առաջին վայրկեաններէն իսկ շատ հետաքրքրական էր եւ 10 վայրկեան ետք արդիւնքն էր ի նպաստ Ահլիի 16-6 եւ կիսախաղը վերջացաւ 40-34 արդիւնքով։ Բ. կիսախաղը ա՛լ աւելի հետաքրքրական էր եւ արդէն քանի մը վայրկեան յետոյ արդիւնքն էր 44ով 40 ու երկու խումբերն ալ քաջալերողները կարծես սթափեցան եւ սկսան ուժգնօրէն խրախուսել խաղացողները։ Խաղի վերջանալուն 7 վայրկեան մնացած արդէն Ահլիի խումբը կատարելապէս տիրապետած էր ու վերջաւորութեան ջախջախեց Զամալէքի խումը 83-58 արդիւնքով։ Երկուստեք խաղարկութիւնը լաւ էր եւ գոհացուցիչ։

Ահլի իր այս յաղթանակը կը պարտի երիտասարդ գոչին՝ յանձինն Ղուրպաուիի, ինչպէս նաեւ Գողտատի-Սամի-Ռեքս երրորդութեան։ Զամալէքի խումբէն լաւագոյններն էին Հելմի (խմբապետը) եւ Հասանէյն։

### ՖՈՒԹՊՈԼ

Անցեալ Ուրբաթ օր Ահլիի մարզադաշտը ժամադրավայրն էր Գահիրէի ոտքի գնդակը սիրող հասարակութեան։ Արդէն ժամը 1.30-ին գրեթէ տեղ մնացած չէր։ Ներկայ էր մօտ 35.000 հոգի։

Այս եղանակին այսքան ըսպասուած միակ մրցումը վերջապէս պիտի խաղցուէր, մէկ ժամ յետոյ. ամէն կողմ զօրաւոր պաշտպանութիւն կար՝ Գահիրէի ոստիկանութեան կողմէ։

Ժամը 2.30ին երկու խումբերը արդէն դաշտն էին ու պատրաստ՝ մրցելու եւ գոհացում տալու ներկաներուն, որոնց մեծ մասը Ահլիի քաջալերողներն էին։

Զամալէքի խումբը ինքնավստահ դաշտ իջած էր եւ կարծես թէ կը ձգտէր լաւ դաս մը տալու Ահլիի խումբին, ու մրցումը սկսելուն պէս յարձակողականի անցաւ. բայց իր դիմացը գտաւ բաւական զօրաւոր պատնէշ մը, որմէ թափանցելը քիչ մը դժուար էր. բայց բախտը ժպտեցաւ Զամալէքի խումբին ու ան յաջողեցաւ ձախ ծայրէն կոլ մը նշանակել. այս կէտէն յետոյ շատ աւելի վստահ խաղարկութիւն ունեցաւ, բայց քանի մը վայրկեան յետոյ Ահլին յաջողեցաւ լաւ փասերով յարձակողական մը ետք՝ նշանակել հաւասարութեան կէտը, ինչ որ մեծ չունչ եւ յոյս տուաւ Ահլաուիներուն, որոնց ուրախութիւնը արդէն չափ ու սահման չունէր, եւ կիսախաղը վերջացաւ հաւասար արդիւնքով 1-1։

Բ. կիսախաղը սկսաւ նոյն թափով եւ երկու խումբերը խրախուսողները արդէն վախ ու դողի մէջ էին եւ իրենց աչքերէն յայտնի էր թէ ամէնքն ալ կ'աղօթէին որ իրենց խումբը չահի։ Բ. կիսախաղը սկսելէն անմիջապէս յետոյ՝ Ահլին նշանակեց իր երկրորդ կէտը ու ամբողջ հասարակութիւնը ոտնընդոստ ուրախութեան ճիչեր արձակել սկսաւ. Ահլաուիներու ուրախութիւնը անսահման էր բայց Զամալէքի մէկ լաւ կազմակերպուած յարձակողականը նշանակեց հաւասարութեան կէտը 8րդ վայրկեանին։

Երկու խումբերն ալ ըրին իրենց կարելին թէ՛ յաղթելու եւ թէ իրենց քաջալերողները գոհ ձըգելու համար։

Այս երկու խումբերուն 15 օր առաջուան փորձերուն եթէ ներկայ ըլլայիք պիտի մտածէիք որ ոչ մէկ խումբ Եգիպտոսի մէջ կրնար յաղթել՝ ըլլայ Ահլի, ըլլայ Զամալէքի, ու նոյն փորձերուն արդիւնքովն էր որ մրցումը վերջացաւ հաւասար կէտեր նշանակելով՝ 2-2։ Այստեղ պէտք է յիշել Ահլիի լաւագոյն խաղացողները՝ Սայէտ Ֆարակ, Ռիֆաաթ էլ Ֆանակիլի, Հասան Կապր, Ապու Դէտա եւ Ռուպի (բերդապահ Բ. կիսախաղին)։ Զամալէքի լաւագոյն խաղացողներն էին՝ Սամիր Մոհամէտ Ալի (Բերդապահ), Ապու Ռիկէլա, էլ Կոհարի Նոսհի եւ Հոսամ։

Ահլիի Նորընտիր Նախագահը՝ Սալահ Տըսուքի մէյ մէկ ձեռք նոր հագուստ նուիրած է Ահլիի խաղացողներուն՝ առ ի գնահատութիւն խաղի ժամանակ իրեն ցոյց տուած մարզական բարձր ոգիին։

Ֆութպոլի միւս խումբերու արդիւնքները հետեւեալներն են։
Իթթիհատ էլ Սաքանտարի կը յաղթէ Օլիմփիքի՝ 3-1։
Սուէզ էլ Ռիատի կը յաղթէ Գանալի խումբին՝ 1-0։
Իսմայիլի խումբը կը յաղթէ Նատի էլ Մասրիի՝ 2-0։
Թերսանա եւ Սիգգա Հատիտ կը հաւասարին՝ 1-1։
Սաուահել եւ Մեհալլա էլ Քոպրա կը հաւասարին՝ 0-0։

Այսպէսով կը վերջանայ երթի մրցումներու 11 շաբաթները եւ կ'ունենանք հետեւեալ դասաւորումը։
ա. Թերսանա 17 կէտ բ. Զամալէք 17 կէտ գ.- Իսմայիլի 15 կէտ դ.- Ահլի 11 կէտ։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ





# ՋԱՀԱԿԻՐ

## ԱՐԵՒՄՏ. ԳԵՐՄԱՆԻՈՅ ՀԵՏ

Իսրայէլին հայթայթուած զէնքերուն պատճառով ԱՄՆի ճրնշումին հետեւանքն այն եղաւ, որ Արեւմտ. Գերմանիոյ վարիչները սկսան զիրար ամբաստանել:

Պաշտպ. Նախարար Ֆրանց Ճոզէֆ Շթրաուս յօդուածով մը յարձակեցաւ Էրհարտի վրայ, որ իր կարգին պատասխանատուութիւնը կը նետէ Նախորդ վարչապետ Ատենաուըրի վրայ, որ Իսրայէլի հետ ստորագրած էր համաձայնութիւն մը՝ առանց Պէն Կուրիոնի հետ տեսակցելու, այլ Ամերիկայի միջնորդութեամբ և պնդումով միայն:

## ՇՈՒԷՏ

Շուէտի մայրաքաղաքին՝ Սթոքհոլմի մէջ կ'ապրի 15 հոգիէ բաղկացած հայ գաղութ մը, որուն մաս կը կազմեն՝ պեթոնի մասնագէտ Պետրոս Զարդարեան, դաշնակահար ուսուցչուհի Ժերմէն Զարեան, ատամնաբոյժ Միրայր Սճէմեան, բիւրեղի փորագրիչ Բիւզանդ Քիւրքճեան, ձայնափիւնի մասնագէտ՝ Անթուան Օրհնեալ:

## ՍՏԱՑԱՆՔ

Ընկ. Յովսէփ Թիւթիւննեան (Երեւան) խմբագրութեանս ձօնած է Վ.Կ. Ջալոյեանի «ՀԱՅԿԱԿԱՆ ՌԵՆԵՍԱՆՍ» հատորը (որ ռուսերէնէ թարգմանուած է այս տարի): 352 էջ, գին 70 կոպէկ: Հայպետհրատ, Երեւան:

«ՔԱՐԱՎԱՆՆԵՐԸ ԴԵՌ ՔԱՅԼՈՒՄ ԵՆ», ուղեւորի նօթեր, գրեց Սիլվա Կապուտիկեան, հրատ. «Հայաստան», Երեւան, 1964: 531 էջ, գին 86 կոպէկ:

«ԽԱՐԻՍԽԷ ՀԵՌՈՒ», պատմուածքներ Արմէն Դարեանի, Պէյրութ, 1964, Տպ. Ատլաս: 190 էջ, գին 2 տոլար: Դիմել՝ փոստարկղ 2032, Պէյրութ:

«ՄՇԱԿ» պարբերագիրք թիւ 1, Նոյ. 1964. պաշտօնաթերթ Լիբանանեան Ազգ. Վարժարաններու Ուսուցչական Միութեան: Մաքուր տպագրութիւն, 48 էջ, բաժնեգին 4 տոլար: Հասցէ՝ փոստարկղ 80095, Պուրճ-Համուտ Պէյրութ: Խմբագիր՝ Արմէն Տօնոյեան: Խմբագրական կազմ՝ Կարօ Գանթարճեան, Սարգիս Պալեան, Գաբրիէլ Մոլոյեան, Յարութիւն Սեփանեան: Վարչական Ներկ. Եփրեմ Քէնտիրճեան:

---

«Ջահակիր»ի մօտ կը վաճառուի

Ոսկան Յովհաննէսեանի
«ԱՐԵԱՆ ԵՒ ՊԱՅՔԱՐԻ ՄԷՋԷՆ»
Ձօն Մեծ Եղեռնի 50ամեակին
էջ 142, Տպ. Նիւ Եօրք, 1965
Գին 2 տոլար:

«Ջահակիր»ի Աղեքսանդրիոյ ներկայացուցիչն է Պր. ՎԱՀԱՆ ՊԷՆՏԵԱՆ, Հելիոպոլիս փողոց թիւ 18, Ռամլէ, Քամ Տը Սեզար:











